Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 13 (32)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 13 (32)



«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1945

Ն. ԲԱԼՏԻՅՍԿԻ

# ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

## ՊԱՏՄԱԿԱՆ ՍՏՈՒԳՈՒՄԸ

*Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ մի ամբողջ շարք երկրներում առաջ եկած հայրենասիրական շարժումը բանվորներին, գյուղացիներին, ինտելիգենցիային և նրանց հասարակական կազմակերպություններին ընդգրկող շատ լայն շարժում է: Սակայն մենք այստեղ ամենից ավելի խոսելու ենք հայրենասիրական շարժման մեկ ջոկատի, նրա բանվորական ավանգարդի և, մասնավորապես, կոմունիզմի ու սոցիալիզմի կողմնակիցների մասին, որովհետև նրանց հայրենասիրությունը երկար ժամանակ ժխտվում էր և տեղ-տեղ դեռևս գնդակոծության ենթարկվում ռեակցիոներների կողմից:*

*Բանվորական շարժման թշնամիների իդեոլոգիական զինանոցում հայտնի թե երբե-*

վիցե եղած լինի՝ ավելի տարածված և պետք է ուղղակի ասել — ավելի վտանգավոր զենք, քան կոմունիստներին և բոլոր ձախ բանվորներին հայրենասիրության բացակայության մեջ մեղադրելը: Նույնպես սովետական պետության հիմնադրումից հետո, որտեղ կոմունիստներն իրենց անմիջապես գործով ցույց տվին հայրենասիրության անձնվեր և բոցավառ դրոշակակիրներ, մյուս երկրներում շարունակում էին կոմունիստներին և նրանց հետ համատեղ հանդես եկող սոցիալիստներին հալածել որպես «հայրենիքի ներքին թշնամիներ», կոմունիստական իդեոլոգիան պատկերացնելով ինչ-որ ուղղակի հակառակ բան հայրենասիրությանը: Ֆաշիստական շարժման զարգացման զուգընթաց բոլոր երկրներում բանվորական շարժման առաջավոր մարդկանց դեմ ուղղված այդ ռեակցիոն հալածանքը, որ քողարկվում էր հայրենասիրության դրոշով, է՛լ ավելի ուժեղացավ, ընդունելով առանձնապես թունավոր ձևեր: Ո՛չ միայն ֆաշիստները, այլև նրանց բոլոր մունետիկները, խաղաղարարները և մյունխենականները հայրենիքի պաշտպանության նկատմամբ կոմունիստների և շատ



սոցիալիստների վերաբերմունքը հայտարարում էին առնվազն կասկածելի:

Բայց շուտով հասավ ինչպես կոմունիստների, այնպես էլ նրանց մեղադրողների հայրենասիրության պատմական ստուգման օրը: Խաղաղասեր ժողովուրդներին ստրկացնելու համար գերմանա-ֆաշիստական իմպերիալիստների սկսած ավազակային պատերազմը հասարակական զանազան խավերին ու քաղաքական պարտիաներին ստիպեց ակնառու կերպով ցույց տալու, թե ո՞վ է պատրաստ գործով պաշտպանելու հայրենիքը և թե ո՞վ է պատրաստ դավաճանելու հայրենիքին: Իսկ ինչ պարզվեց պատերազմի հրի մեջ կատարված այդ մեծ քննության ժամանակ:

Պարզվեց նախ, որ գերմանացիների կողմից օկուպացված Եվրոպայի երկրներում հայրենիքի դավաճաններ դարձան ֆաշիստները և մյուս ծայրահեղ ռեակցիոներները, որոնք մինչև պատերազմը և, դեռևս պատերազմի սկզբում, բոլորից ավելի բարձր էին գոռում իրենց «հայրենասիրության» և կոմունիստների «անհայրենիության» մասին: Նրանք, ովքեր դավաճանեցին Ֆրանսիային, կոմունիզմի ամենակատաղի թշնամիներն էին. Պետենը,

Լավալը, Դառլանը և նրանց ընկերները, ինչպես նաև նրանց թիկունքին կանգնած ֆինանսական դայլաձկները Կոմիտե դը Ֆորժից, Շնեյդեր-Կրեզո կոնցերնից և մյուս խոշորագույն կոնցերններից ու տրեստներից: Իսկ ո՞վքեր եղան հայրենիքի դավաճանները Նորվեգիայում, Դանիայում, Հոլանդիայում, Բելգիայում: Ո՞վքեր էին գերմանացիներին օգնում Բուլղարիայում ստրկական այդ երկիրը, որտեղ ժողովուրդը խորապես կապված է իր ազատարարի՝ Ռուսաստանի հետ, դարձնելու Գերմանիայի ռազմական պլացդարմը Սովետական Միության դեմ: Ո՞վքեր էին Լեհաստանում, Չեխոսլովակիայում, Ավստրիայում, Հարավսլավիայում, Հունաստանում համագործակցում որպես գերմանական դահիճների ու ստրկացնողների կամակատարներ: Այդ զազրելի կլիկները և նրանց թիկունքին կանգնած անկուշտ բանկիրներն ու կալվածատերերը: Գերմանական զավթիչների պատերազմական ժամանակավոր հաջողություններին զուգընթաց, պատերազմի առաջին ժամանակաշրջանում, նրանց կողմից օկուպացված բոլոր երկրներում աճեց այն ռեակցիոներների թիվը, որոնք պատրաստակա-



մություն էին հայտնում ոսպե ապուրի համար վաճառելու իրենց հայրենիքի անկախությունը:

Երկրորդ, կոմունիստները և շատ սոցիալիստներ գործով դարձան իրենց երկրների ազատության ու անկախության անսասան հավատարիմ և անձնվեր պաշտպանները ընդդեմ գերմանական իմպերիալիստների ու նրանց գործակիցների ոտնձգությունների: Ամենուրեք նրանք կանգնած էին գերմանական օկուպանտների բռնապետության դեմ մարտնչող հայրենասեր բանվորների և գյուղացիների առաջին շարքերում:

Ազատասեր ժողովուրդները ամենայն իրավամբ հիանում են և հպարտանում Սովետական Միության հերոսական ռազմիկների ու պարտիզանների, ինչպես նաև Հարավսլավիայի, Ֆրանսիայի, Լեհաստանի, Հունաստանի և գերմանական օկուպանտների կողմից ժամանակավորապես զավթված մի շարք այլ երկրների հայրենասերների հայրենասիրական սխրագործություններով: Իսկ բոլորին հայտնի է, որ այդ սխրագործությունները, որոնք ընդմիշտ կմնան պատմության մեջ որպես հայրենասիրական հերոսության և անձնազոհության չգերազանցված օրինակներ, բաղ-

մաթիվ դեպքերում կատարված են հատկապես կոմունիստների և նրանց մերձավորագույն զինակիցների կողմից:

Այդ անհերքելի փաստերը նշանակում են կոմունիզմի և սոցիալիզմի չարամիտ հակառակորդների իդեոլոգիական այնպիսի խորտակիչ պարտություն, որ, թվում է, որ նրանց այլևս չահավետ չէ վիճելու, թե ո՞վ է հայրենասեր և ո՞վ ոչ: Սակայն նրանցից բոլորը չէ, որ կարողանում են լռել և բոլորը չէ, որ իրենց արդեն համարում են զինաթափված: Օրինակ, Ամերիկայում, Անգլիայում, Շվեդիայում հակակոմունիստական պայքարի մի քանի հին չեմպիոններ դեռևս աշխատում են ջուր պղտորել և կասկած սերմանել, հույս դնելով հակակոմունիստական նախապաշարմունքների կենսունակության վրա՝ անիրազեկ հասարակության մոտ: Դրա համար էլ արժե մի փոքր ուշադրություն դարձնել այն չնչին փաստարկումներին, որ դեռևս մնացել է նրանց մոտ:

## ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Աշխատավորության թշնամիներից ոմանք դիմում են, օրինակ, հետևյալ տեսակի եզրակացությունների: Եթե ճիշտ է,



ասում են նրանք, որ Միավորված Ազգերի կոմպարտիաները հակահիտլերյան պատերազմում հայրենասիրական դիրք էին բռնել, ապա դա իբրև թե սոսկ պատահականություն է. կոմունիստական իդեոլոգիան ինքնին ոչ մի երաշխիք չի տալիս, որ նրա կողմնակիցները կպաշտպանեն իրենց երկիրը ամեն մի պատերազմում: Ուրեմն այլ պատերազմում նրանք կարող են ոչ-հայրենասիրական դիրք բռնել:

Այստեղ ճիշտ ենթադրությունից արված է արմատապես անճիշտ հետևություն: Իհարկե, ճիշտ է, որ կոմունիզմի կողմնակիցները պատրաստ են պաշտպանելու ոչ ամեն մի պատերազմ, այլ միայն արդարացի, ազատագրական պատերազմը: Բայց չէ՞ որ միայն այդպիսի պատերազմն է հայրենասիրական: Չէ՞ որ անարդարացի, զավթողական պատերազմը, ինչպես էլ ոսկեզոծեն նրա նպատակները, ո՛չ մի ընդհանուր բան չունի հայրենասիրության հետ: Ավելին. որևէ երկրի հանցագործ պարագլուխների հրահրած զավթողական պատերազմը ոտնձգություն է ո՛չ միայն ուրիշ ժողովուրդների կյանքի դեմ, այլև սեփական ժողովրդի կյանքի ու պատվի դեմ: Դրա համար էլ եթե ռեակցիոն

պարագլուխները իրենց երկիրը ներգրավել են անարդարացի, զավթողական պատերազմի մեջ, ապա իսկական հայրենասիրությունը տվյալ երկրի քաղաքացիներից պահանջում է ո՛չ միայն վճռականապես հրաժարվել այդ պատերազմը պաշտպանելուց, այլև պայքար մղել նրա դեմ:

Օրինակի համար հարկ չկա հեռու գնալու: Գերմանիայի մասին խոսել չարժե, որովհետև այժմ ամեն մի դպրոց (նույնիսկ կույրը) տեսնում է, որ եթե գերմանացիների մեծ մասը ընդունակ լիներ տարրական հոգատարություն ցույց տալու իր երկրի բախտի նկատմամբ, նրանք վաղուց պետք է ապստամբած լինեին հիտլերյան կառավարության և նրա հրեշավոր իմպերիալիստական ավանտյուրայի դեմ: Բայց ինչ վերաբերում է գերմանական իմպերիալիզմի արբանյակ հանդիսացող երկրներին՝ Ռումինիային, Ֆինլանդիային, Հունգարիային, Բուլղարիային, ապա շատ բնորոշ է, որ հատկապես այդ երկրներում երկու տասնամյակի ընթացքում կառավարող ինստանցիաները և դատական իշխանությունները միշտ էլ կոմունիստական պարտիային և նրան համակրող բանվորական կազմակերպություններին պատկա-



նելը դիտում էին որպես «դավաճանություն հայրենիքին», որի համար դատապարտում էին բազմամյա բանտարկության: Իսկ երբ այս պատերազմի սկզբում այդ երկրների ռեակցիոն կառավարողներ Անտոնեսկուն, Ռյուտին, Խորտին, Ֆիլովը և նրանց ընկերակիցները դարպասները բաց արին գերմանական զորքերի առաջ և իրենց երկրները հրեցին Հիտլերի զավթողական պատերազմի հորձանքի մեջ, ապա ո՞րն էր այդ ժամանակ ռումինների, ֆինների, հունգարների, բուլղարների հայրենասիրական պարտքը, որոնք թանկ էին գնահատում իրենց հայրենիքի բախտը: Իհարկե, ֆաշիստական պատերազմը պաշտպանելը չէր, այլ նրա դեմ պայքար մղելը: Չէ՞ որ հիտլերյան Գերմանիայի կողմում մղվող պատերազմը չէր կարող վնաս չհասցնել այդ երկրների կենսական շահերին, իսկ հաղթանակի դեպքում նրանց կվնասեր ավելի շատ, քան պարտության դեպքում, որովհետև Գերմանիայի հաղթանակը նրանց համար կնշանակեր կորցնել ամեն մի ինքնուրույնություն:

Այդ երկրների պրոհիտլերյան կառավարողները գործում էին բացահայտորեն ամբողջ Եվրոպայի նկատմամբ գերմանական

տիրապետություն հաստատելու օգտին, և իրենց երկրներին հասցրին կործանման դուռը: Սակայն գերմանական իմպերիալիստների այդ կամակատարները, որոնք բազմապատիկ հանցավոր են հայրենիքին դավաճանելու մեջ, իրենց հանցագործ գործունեությունը քողարկելով կեղծ հայրենասիրական դիմակով, բանտերում տանջում և մահվան էին ենթարկում իսկական հայրենասերներին՝ կոմունիստներին և նրանց, որոնք անձնվիրաբար պայքարում էին իրենց հայրենիքը գերմանական կամայականությունից և ֆաշիստական պատերազմի մսաղացից փրկելու համար:

Ուրեմն պատմական ստուգմամբ ապացուցված է, որ կոմունիզմը հետևողական ակտիվ և անձնվեր հայրենասիրության դիրքն է:

## ԱՌԱՆՑ ՆԱՑԻՈՆԱԼԻՍՏԱԿԱՆ ՆԱԽԱՊԱՇԱՐՈՒՄՆԵՐԻ

Աշխատավորության թշնամիներից ոմանք հայրենասիրությունը շփոթում են բուրժուական նացիոնալիզմի հետ և կոմունիստներին, ինչպես նաև դեմոկրատիայի համար անկեղծորեն պայքարող բոլոր մարտիկներին կշտամբում են նրանց հայրենա-



սիրական դիրքի երևակայական կիսակատարության համար, այն հիման վրա, որ նրանք իրենց ազգը չեն դասում «բոլորից բարձր»: Այդ բարետես վարագույրի տակ թաքնված են ամենևին ոչ անմեղ նացիոնալիստական նախապաշարմունքներ, իսկ երբեմն էլ՝ իսկական հայրենասիրությանը միանգամայն խորթ իմպերիալիստական ձգտումներ:

Ինչպես հայտնի է, իրենց «աստծո կողմից ընտրված» ազգի կամ ռասայի գերազանցության վերաբերյալ նացիոնալիստական ու ռասայական նախապաշարմունքները վաղուց արմատավորվում են ռեակցիոներների կողմից՝ դեմոկրատական շարժման դեմ մղվող պայքարում քաղաքականապես ետամնաց տարրերին իրենց կողմը ներգրավելու համար: Մյուս ազգերի և ռասաների նկատմամբ մշտապես ատելություն և արհամարհանք հրահրելու միջոցով ռեակցիոներները նացիոնալիստական նախապաշարմունքները վերածում են շովինիզմի և ֆաշիզմի թունավոր մոլուցքի, իսկ այնուհետև հրեական ջարդերի, նեգրերին լինչելու և հարևան ժողովուրդների կյանքի նկատմամբ ոտնձգություն կատարելու մեթոդներով ցույց են տալիս «իրենց ազգի»

չինծու «դերազանցությունը»: Բայց երբ հայրենասիրական պայքար պահանջվեց հայրենիքը օտարերկրյա զավթիչներից պաշտպանելու համար, ապա այդ նույն շովինիստներն ու ֆաշիստները, ինչպես մենք տեսանք գերմանացիների կողմից օկուպացված երկրներում, համաձայնություն էին դալիս թշնամու հետ, կամ թե, ինչպես Ամերիկայի ու Անգլիայի պրոֆաշիստական որոշ շրջանները, աշխատում էին ջլատել թշնամու դեմ մղվող ընդհանուր պայքարը և թշնամուն փրկել լիակատար պարտությունից, նրա հետ կոմպրոմիսի գալու համար:

Նացիոնալիստները և շովինիստները սիրում են քողարկվել «իրավացի է, թե անիրավացի, բայց դա իմ երկիրն է» հայտնի ասացվածքով: Ըստ երևույթին, նրանք կարծում են, որ սեփական երկրի կառավարական քաղաքականության հետ կեղծ հայրենասիրական համերաշխություն ցույց տալով կարելի է արդարացնել մյուս ազգերի իրավունքների և ազատության դեմ կատարված ամեն մի ոտնձգություն: Դա, իհարկե, հայրենասիրության հասկացողության բացահայտ աղավաղումն է, որը ո՛չ



պատմական, ո՛չ է՛լ քաղաքական արդարացում չունի:

Պատմության մեջ չի եղել ո՛չ մի հայրենասիրական շարժում, որ նպատակ ունենար սպառնալ որևէ օտար ազգի իրավահավասարությանը և ազատությանը: 18-րդ և 19-րդ դարերի հայրենասիրական բոլոր խոշոր շարժումները նպատակ ունեին ազատագրելու իրենց սեփական երկիրը օտարերկրյա կախումից կամ թե ետ մղելու օտարերկրյա արշավանքը. ինչպես օրինակ, 1775—1783 թվերի հյուսիս-ամերիկյան պատերազմը անկախության համար, ֆրանսիական ժողովրդի 1792—1794 թվերի ռևոլյուցիոն պատերազմները, հույների (1821—1829), լեհերի (1830, 1846, 1863) և մի շարք այլ ժողովուրդների ազգային ազատագրական պայքարը:

Հասկանալի է, որ իր ազգի ազատության համար պայքարելու պարտականությունը այլ բան է, իսկ ուրիշ ազգի ազատությունը ճնշելու համար պայքարելու պարտականությունը՝ միանգամայն այլ: Առաջինը հայրենասիրություն է, երկրորդը՝ ոչ: Օրինակ՝ տիրապետությունը գաղութների վրա, այն արտոնությունների պահպանումը, որոնք մետրոպոլիային թույլ են

տալիս նեղելու, շահագործելու գաղութային ազգերին, ո՛չ մի կերպ չի կարելի ազնվորեն հիմնավորել հայրենասիրական նկատառումներով: Ըստ էության, ինձ թվում է, որ գաղութային և ազգային ճնշման քաղաքականությունը համապատասխանում է մետրոպոլիայի ո՛չ թե ամբողջ ազգային շահերին, այլ միայն որոշ, վերնախավային շերտերի ու դասակարգերի շահերին, որոնց գաղութների շահագործումը նյութական միջոցներ է տալիս ամրապնդելու համար իրենց տիրապետող դիրքը ինչպես սեփական երկրում, այնպես էլ գաղութներում, և որոնք տրամադիր են նեղմիտ շահամոլական քաղաքականություն վարելու ի հաշիվ մյուս ազգերի շահերի, այնպիսի քաղաքականություն, որը սրում է միջազգային հարաբերությունները և ժողովուրդներին տանում դեպի ազգային աղետներ:

Նույնիսկ բուրժուական չափավոր նացիոնալիզմը նշանակում է սեփական ազգի (կամ նրա վերնախավային շերտերի) շահերը հակադրել մյուս ազգերի շահերին: Բայց նույնիսկ ամենաջերմ հայրենասիրությունը, բոցավառ սերը դեպի իր հայրենիքը լիովին համընկնում է բոլոր խաղա-



ղասեր ազգերի նկատմամբ հարգանք տածելու հետ և ազգերի իրավահավասարությունը պահպանելու դիրքի հետ: Ռուսական խոշորագույն դեմոկրատ հրապարակախոսները դեռևս անցյալ դարում առանձնապես սուր կերպով զգում և ուժգնորեն ընդգծում էին հայրենասիրական իդեոլոգիայի կարևոր կողմը: «Իսկական հայրենասիրությունը,— հայտարարում է Դոբրոլյուբովը,— չի համակերպվում առանձին ժողովուրդների նկատմամբ տածվող թշնամության հետ»: Եվ Բելինսկին ոգեշունչ կերպով ազդարարում էր.

«Սիրել իր հայրենիքը, նշանակում է բոցավառ կերպով ցանկալ տեսնել նրա մեջ իրագործումը մարդկության իդեալի, և ուժերի ներածին չափ նպաստել դրան: Հակառակ դեպքում հայրենասիրությունը կլինի չինականություն, որը սիրում է իր սեփականը միայն այն բանի համար, որ դա իր սեփականն է, և ատում է բոլոր օտարը միայն այն բանի համար, որ դա օտար է և չափազանց հիանում սեփական այլանդակությամբ ու հրեշավորությամբ»:

Այսպես, ուրեմն, իսկական հայրենասիրությունը ազատ է ամեն տեսակ նացիոնալիստական դոռոզամտությունից, շահամոլությունից և մյուս խաղաղասեր ժողովուրդների նկատմամբ տածած ատելությունից:

## ԿՈՍՄՈՊՈԼԻՏԻԶՄԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆԸ ԽՈՐԹ ԻԴԵՈԼՈԳԻԱ Է

Աշխատավորության թշնամիները հաճախ փորձում են կոմունիզմի և սոցիալիզմի կողմնակիցների հայրենասիրությունը ժխտել նաև մեկայարբերելով աշխատավորության միջազգային համերաշխության նկատմամբ նրանց ունեցած դիրքը: Այդ դիրքը մեր հակառակորդների կողմից պատկերվում է որպես կոսմոպոլիտիզմ՝ անտարբեր և արհամարհական վերաբերմունք դեպի հայրենիքը:

Դա արդեն չացահայտ զրպարտություն է: Կոմունիզմը ընդհանուր ոչ մի բան չունի կոսմոպոլիտիզմի հետ: Պայքարելով աշխատավորության միջազգային համերաշխության դրոշի տակ, յուրաքանչյուր երկրի կոմունիստական շարժումը, որպես աշխատավորական մասսաների առաջավոր շարժում, ամուր կանգնած է հայրենական



հողի վրա: Կոմունիզմը իսկական հայրենասիրությունը ոչ թե հակադրում, այլ զուգակցում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի հետ:

Միայն չփոթարար սխալասները կամ բանվորական շարժման թշնամիները կարող են ունդել, որ բանվոր դասակարգը, եթե նա սիրում է իր հայրենիքը, չի կարող եղբայրական համերաշխություն ձգտել ուրիշ երկրների բանվոր դասակարգի հետ: Եվ միայն կեղծարարներն ու զրպարտողները կարող են պնդել, որ եթե բանվոր դասակարգը ձգտում է աշխատավորության միջազգային համերաշխության, ապա նա չի սիրում իր հայրենիքը, այլ դառնում է իր հայրենիքից, իր ազգից կտրված ինչ որ կոսմոպոլիտ: Ծիծաղելի է ենթադրել, որ բանվոր դասակարգը կարող է հրաժարվել իր ազգից: Չէ՞ որ ժամանակակից բանվոր դասակարգը ազգի կենդանի մարմնի հիմնական կմախքն է, և ո՛չ միայն իր թվով, այլև տնտեսական ու քաղաքական դերով: Ազգի ամբողջ ապագան ընկած է ամենից տառաջ նրա ուսերի վրա, իսկ քանի որ բանվոր դասակարգը այնքան սերտ կապված է ազգի հետ, ապա կոմունիստական պարտիան էլ որպես բանվոր դասակարգի

պարտիա չի կարող հրաժարվել իր ազգից, եթե նա չի ուզում կորցնել իր բոլոր կենսատու արմատները:

Կոսմոպոլիտիզմը աշխատավորության միանգամայն խորթ իդեոլոգիա է: Դա միջազգային բանկիրական տների և միջազգային կարտելների ներկայացուցիչների համար, բորսայի խոշորագույն սպեկուլանտների, զենքի համաշխարհային մատակարարների («մահվան առևտրականների») և նրանց գործակալների համար բնորոշ իդեոլոգիա է: Այդ շրջանները իրոք գործում են համաձայն լատինական առածի՝ ubi bene, ibi patria (որտեղ լավ է, այնտեղ էլ իմ հայրենիքն է): Նրանք իրենց սեյֆերի հայրենասերներն են: Եվ նրանցից շատերը պնդում են, որ նրանք ամենևին էլ չեն հանդիսանում քաղաքական որևէ իդեոլոգիայի կողմնակիցներ: «Մենք քաղաքականությունից դուրս կանգնած գործարար մարդիկ ենք», հայտարարում են նրանք հաճախ: Սակայն նրանց այդ «արտաքաղաքականությունը» ո՛չ մի կերպ չի կարելի ընդունել անկեղծորեն: Ճիշտ է, նրանք իրոք գործարարներ են, որոնք զբաղվում են գնմամբ ու վաճառմամբ, որ-



պես պրոֆեսիա: Բայց դա ամենևին էլ չի խանգարում նրանց առնելու ժողովրդի ամեն մի դեմոկրատական շարժումը և իրենց համար վարձելու ֆաշիստական կամ պրոֆաշիստական մտայնության քաղաքական գործակալներ՝ դեմոկրատիայի դեմ պայքարելու համար:

Ավելին. հենց ոսկե հորթի ետևից անդուլ կերպով ընկնելու հետևանքով միջազգային սպեկուլանտները ո՛չ միայն սիրով վաճառում, այլև հեշտությամբ վաճառվում են այն օտարերկրյա իմպերիալիստներին, ովքեր ավելի են առաջարկում: Այդ բանի հետևանքով այնքան շատ ֆինանսական կոսմոպոլիտներ ո՛չ միայն չեզոք երկրներում, այլև Ֆրանսիայում և անգլո-սաքսոն երկրներում պատրաստ գտնվեցին ամեն տեսակ ծառայություններ մատուցելու գերմանա-ֆաշիստական ագրեսորի կամակատարներին: Գերմանացիների հետ ունեցած իրենց կարտելային և այլ համաձայնությունների հիման վրա նրանք ուղղակի կամ անուղղակի մասնակցում էին հիտլերյան Գերմանիայի ռազմական հզորությունը ուժեղացնելու գործին, իսկ պատերազմի ժամանակ նրանցից շատերը իրենց երկրների ռազմական արտադրու-

թյունը արգելակում էին հօգուտ գերմանական իմպերիալիզմի շահերի։ Միացյալ Նահանգներում գերմանական մոնոպոլիաների հետ կապված ամերիկյան մի ամբողջ շարք խոշորագույն մոնոպոլիաների այդպիսի հակահայրենասիրական գործունեությունը մերկացվեց Տրումենի (ԱՄՆ-ի ներկայիս պրեզիդենտի) գլխավորած հանձնաժողովի կողմից։ Նման ոչ քիչ փաստեր հայտնի են նաև մյուս երկրների պրակտիկայից։

Այսպիսով, կարելի է ապացուցված համարել, որ միջազգային մոնոպոլիաների և սպեկուլյանտների կոսմոպոլիտիզմը ամենևին էլ «արտաքաղաքականություն» չէ։ Ո՛չ, այն սերտորեն կապված է հակադեմոկրատական ֆաշիստական քաղաքականության հետ, այսինքն այն ամենավտանգավոր քաղաքականության հետ, որ առաջ բերեց երկրորդ համաշխարհային պատերազմը և որն, ի հարկե, եթե չսանձահարվի, առաջ կբերի նոր ամայեցուցիչ պատերազմների վտանգ։

Միջազգային գիշատիչների այդ կործանարար քաղաքականության դեմ, շովինիզմի և ֆաշիզմի դեմ գիտակից բանվորներն առաջ են քաշում միջազգային բարեկամու-



թյան և միավորման քաղաքականությունը, որն ելնում է բանվորական կազմակերպությունների գործողությունների միասնությունից և ավարտվում է բոլոր դեմոկրատական ժողովուրդների սերտ համագործակցությամբ՝ ժողովուրդների խաղաղության, ազատության և անկախության ապահովման համար ֆաշիզմի դեմ մղվող պայքարում։ Մի՞թե այդ քաղաքական գիծը լիովին չի համերաշխում յուրաքանչյուր առանձին ժողովրդի հայրենասիրական ձգտումների հետ։ Թող բանվոր դասակարգի թշնամիները փորձեն ապացուցել, որ պրոֆմիությունների համաշխարհային կոնֆերանսի որոշումները, որոնք ընդունվել են Լոնդոնում 1945 թվի փետրվարին, չեն համապատասխանում բոլոր դեմոկրատական երկրների համազգային շահերին։ Թող նրանք փորձեն մարդկանց ստիպել հավատալու, որ առանձին դեմոկրատական ժողովուրդների ազատ զարգացումը և բարգավաճումը ամենից ավելի լավ չի ապահովվի դեմոկրատական երկրների կայուն համագործակցության հիման վրա՝ ֆաշիզմը արմատախիլ անելու և բոլոր խաղաղասեր ազգերի ազատությունը և անկախությունը պաշտպանելու գործում։

Հազիվ թե ժողովուրդները հավատան նրանց:

Սակայն հենց դա էլ հայրենասիրությունը միջազգային համագործակցության հետ զուգակցելու այն գիծն է, որը վճռականորեն պաշտպանվում է կոմունիզմի կողմնակիցների, ինչպես նաև բանվոր դասակարգի, գյուղացիության և ինտելիգենցիայի պատկանող բոլոր առաջավոր մարդկանց կողմից:

## ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՏ

Առաջավոր բանվորների հայրենասիրությունը կասկածի ենթարկելու վերջին փորձը սովորաբար արվում է վկայաբերելով նրանց համերաշխությունը Սովետական Միության հետ: Օրինակ՝ կեղծավոր հարց են տալիս. «Ինչպես կարելի է մեր երկրի հայրենասերներ համարել նրանց, որոնք իրենք էլ չեն թաքցնում, որ հանդիսանում են օտարերկրյա պետության հավատարիմ բարեկամները»:

Այո, գիտակից բանվորները, ինչպես նաև աշխատավոր դասակարգերին պատկանող մյուս առաջավոր մարդիկ, ոչ մի երկրում չեն ժխտում իրենց համերաշխու-



թյունը Սովետական Միության հետ: Բայց մի՞թե այդ համերաշխությունը չի համապատասխանում ամեն մի երկրի իսկական հայրենասերների լավագույն ձգտումներին: Չէ՞ որ խոսքը վերաբերում է սոցիալիստական պետության նկատմամբ եղած բարեկամության ու համերաշխության, պետություն, որն իր բուն բնույթով ազատ է իմպերիալիստական ձգտումներից, որը հարգում և պաշտպանում է ազգերի իրավահավասարության և ինքնորոշման սկզբունքները և հանդիսանում է ընդհանուր խաղաղության հուսալի պաշտպանը և անսասան հենարանը: Սովետական մեծ պետության այդ վեհանձնության ու դերի գիտակցումը այժմ արդեն ներթափանցել է ազատասեր ժողովուրդների լայն խավերի մեջ: Միայն առավել ռեակցիոն, պրոֆաշիստական շրջանները, ի հարկե, շարունակում են զրպարտել Սովետական Միության հասցեին:

Հայտնի է նույնպես, որ հակահիտլերյան կոալիցիայի բոլոր պետությունները ընդունել և ընդունում են իրենց շահագրգռվածությունը՝ խաղաղասեր երկրների կայուն խաղաղություն և անվտանգություն ապահովելու համար տևական համագոր-

ծակցություն հաստատել Սովետական Միության հետ։ Այդ դեպքում ինչ զարմանալի բան կա, երբ իսկական հայրենասերները ամենուրեք իրենց խոր համոզմունքն են հայտնում, որ իրենց հայրենիքը իր անկախությունը և ազատ զարգացումը կարող է ամենից ավելի լավ ապահովել Սովետական Միության հետ բարեկամություն և սերտ համագործակցություն հաստատելով։ Ակներև է, որ այդ համոզմունքը անխզելիորեն կապված է ժամանակակից հայրենասիրության հետ։

Մյուս կողմից հակասովետական տենդենցները բացահայտորեն չեն համակերպվում հայրենասիրական համոզմունքի հետ։ Ճիշտ է, ամեն մի հակասովետական քաղաքականություն փորձել և փորձում է քողարկվել կեղծ հայրենասիրական ոսկեզօծումով։ Սակայն վերջին ավելի քան քառորդ դարի պատմությունը բազմիցս ակնառու կերպով ցույց է տվել, որ այդպիսի ոսկեզօծումը շատ կարճատև է։ Այդ բանն առանձնապես ակներև կերպով երևան եկավ այժմ վերջացած նվաճողական պատերազմի նախօրյակին։ Գերմանիայի արբանյակ երկրների կառավարողները, օրինակ, որքան էլ աշխատում էին իրենց



ամոթալի հակասովետական պատերազմը գունազարդել հայրենասիրության փայլով,— այդ կեղծ փայլից արդեն վաղուց ոչինչ չի մնացել։ Բոլորին պարզ է դարձել, որ Անտոնեսկուի, Ռյուտիի, Խորտիի, Ֆիլովի կլիկները վարում էին հակահայրենական, իրենց երկրների համար վնասակար ռազմական քաղաքականություն։ Ով այժմ այդ երկրներում կհամարձակվեր հանդես գալ, կրկնելով Սովետական Միության դեմ ուղղված՝ պատերազմի ժամանակվա կեղծ ֆրազները, նա պարզապես իրեն կդարձներ ժողովրդի արհամարհանքի առարկա։ Իսկ այսօր Լեհաստանում ո՞վ է հավատում, որ պիլսուդսկիականները, Բեկերը և նրանց համախոհները իրենց հակասովետական, պրոհիտլերյան քաղաքականությամբ ծառայում էին որևէ հայրենասիրական նպատակի։

Ոչ ավելի նախանձելի բախտի արժանացավ կեղծ հայրենասիրությունը ֆրանսիական և անգլիական մյունխենականների, որոնք հակառակ իրենց երկրների իսկական ազգային շահերի, համառորեն սաբոտաժի էին ենթարկում գերմանական ագրեսիայի դեմ դիմադրության ընդհանուր ճակատի ստեղծումը և ձգտում էին մե-

կասացնել Սովետական Միությունը, հիտլերյան Գերմանիային ձեռքերի ազատություն տալով Արևելքում: Նույնիսկ Անգլիայի ու Ֆրանսիայի կողմից հիտլերյան Գերմանիային պատերազմ հայտարարելուց հետո էլ, Դալադյե—Ռեյնոյի ֆրանսիական կառավարությունը և Չեմբերլենի անգլիական կառավարությունը, ինչպես բոլորին հայտնի է, շատ ավելի քիչ էին հետաքրքրվում իրենց երկրները պաշտպանելու խնդիրներով, քան հակասովետական ոտնձգություններով (ամենից առաջ քաղաքական և ռազմական օգնություն ցույց տալով գերմանական իմպերիալիզմի ագադա արբանյակին՝ ռեակցիոն Ֆինլանդիային, որն արդեն այն ժամանակ վերածված էր պատրաստի պլացդարմի՝ ՍՍՌՄ-ի վրա իմպերիալիստական հարձակում գործելու համար):

Դա կարելի էր այժմ չհիշել էլ, եթե անգլիական ու ֆրանսիական մամուլի որոշ օրգաններ չփորձեին կոմունիստների հայրենասիրությունը վարկաբեկել պատերազմի առաջին ժամանակաշրջանի նկատմամբ դեմագոգիկ ակնարկումներ անելով: «Հիշեցեք 1939 և 1940 թվերը,— բացականչում են այդ դեմագոգները,— մեզ հա-



մար ամենավտանգավոր ժամանակաշրջանը, երբ Սովետական Միությունը և Միացյալ Նահանգները դեռևս չէին պատերազմում Գերմանիայի դեմ. այդ ժամանակ մեր կոմունիստներն էլ տրամադիր չէին պաշտպանելու իրենց երկրի պատերազմը...» Բայց, եթե արդեն անհրաժեշտ է վերհիշել եվրոպական պատերազմի այդ փուլը, ապա ինչու չհիշել նաև այն փաստը, որ ֆրանսիական և անգլիական կառավարությունները պատերազմի առաջին ութ ամիսների ընթացքում փաստորեն ամենևին էլ չէին պատերազմում Գերմանիայի դեմ, չէին դիմում պատերազմական գործողությունների, և լրջորեն ձեռնամուխ չեղան իրենց երկրների պաշտպանությունը ամրապնդելու գործին: Դրա փոխարեն այն ժամանակվա ֆրանսիական կառավարությունը կատաղաբար հալածում էր կոմունիստներին և Չեմբերլենի անգլիական կառավարության հետ համատեղ զենք էր մատակարարում Սովետական Միության դեմ պատերազմող ֆիննական ռեակցիոներներին (մի բան, որով այն ժամանակ զբաղվում էր նաև Մուսոլինիի իտալական կառավարությունը): Ավելին, անգլո-ֆրանսիական ռազմական խորհրդի

1940 թվի փետրվարի 6-ի նիստում (այ-
սինքն գերմանացիների Ֆրանսիա ներխու-
ժելուց և Դյունկերկի աղետից ընդամենը
երեք ամիս առաջ) Դալադյեն Չեմբերլենին
հաղորդեց, որ մեկ ֆրանսիական և մեկ
լեհական դիվիզիա մոտիկ օրերս կուղարկ-
վեն... Ֆինլանդիա:

Այսպիսով, ֆրանսիական և անգլիական
կառավարությունները, ըստ երևույթին,
այդ ժամանակ իրենք էլ դեռևս ճիշտ չգի-
տեին, թե ում դեմ են նրանք գլխավորա-
պես պատերազմելու: Հատկանշալի է, որ
Ֆրանսիայում և Անգլիայում եղած իսկա-
կան հայրենասերները ո՛չ մի կերպ չէին
կարող հիանալ այդ պատերազմով: Իսկ
երբ Ֆրանսիայում 1940 թվի մայիսին Ռեյ-
նո-Դալադյեի կառավարության ողորմելի
պատերազմը ձախողվեց, ապա ֆրանսիա-
կան հայրենասերները՝ և նրանց առաջին
շարքերում կոմունիստները՝ կապիտուլյա-
ցիայի չենթարկվեցին, այլ սկսեցին իրենց
բազմամյա քաջարի պայքարը գերմանական
օկուպանտների դեմ:

Իսկ Անգլիայում կառավարական քաղա-
քականությունը սկսեց դեպի լավը փոխվել
այն կապակցությամբ, որ մյունխենյան
քաղաքականության այնպիսի հայտնի հա-



կառավորողը, ինչպիսին Ուինստոն Չերչիլն
էր, որը Չեմբերլենի կաբինետում երկրոր-
դական պոստ էր զբաղեցնում, 1940 թվի մա-
յիսին դարձավ կառավարության ղեկավա-
րը: Բայց ինչ զարմանալի բան կա, որ
Չերչիլլին էլ միայն դժվարությամբ և
միայն աստիճանաբար հաջողվեց բրիտա-
նական պետական նավը դնել հակահիտլեր-
յան պայքարի նոր կուրսի մեջ, առավել
ևս, որ նա պառլամենտում կարող էր հեն-
վել հիմնականում միայն այն նույն մեծա-
մասնության վրա, որը մինչ այդ հավա-
նություն էր տալիս Չեմբերլենի մյունխեն-
յան քաղաքականության բոլոր չարաշառ-
տիկ քայլերին: Եվ ո՞վ կարող է զարմա-
նալ, որ հիտլերյան համոզված հակառա-
կորդներն ինչպես Անգլիայում, այնպես էլ
մյուս երկրներում, անգլիական արտաքին
քաղաքականության այդպիսի բազմամյա
փորձություններից հետո դեռևս Չերչիլլի
կառավարության օրոք որոշ ժամանակ սպա-
սողական դիրք էին բռնում, մինչև որ այդ
կառավարությունը իր գործողություննե-
րով չտվեց Մեծ Բրիտանիայի քաղաքական
կուրսի կայուն փոփոխման բավականաչափ
համոզիչ ապացույցներ: Այդ տեսակետից
վճռական նշանակություն ուներ Չերչիլլի

1941 թվի հունիսի 22-ի հայտարարությունը Սովետական Միության ազատագրական պատերազմի հետ Անգլիայի համերաշխության մասին, ինչպես նաև հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող պատերազմում համատեղ գործողությունների վերաբերյալ Սովետական Միության և Մեծ Բրիտանիայի միջև կնքված համաձայնությունը, որը հաջորդեց այդ հայտարարությանը: Այդ ժամանակվանից Անգլիայում ոչ մի գիտակից բանվոր հիմք չուներ մնալու պարտվողական դիրքի վրա: Բանվորական շարժման մեջ սկսվեց հայրենասիրական վերելք, ըստ որում կոմունիստները սկսեցին առանձնապես ակտիվորեն և վճռականորեն պաշտպանել իրենց երկրի ռազմական ջանքերը հիտլերյան Գերմանիայի դեմ:

Անգլիայում դրությունն այսպես էր պատերազմի առաջին շրջանում: Եվ եթե կոմունիստները թույլ են տվել առանձին սխալներ, ապա հիմնական հարցում, որով նրանց քննադատում էին, այսինքն ինչպես մինչև պատերազմը, այնպես էլ պատերազմի ժամանակ Անգլիայի և Սովետական Միության միջև գործողությունների միասնություն հաստատելու անհրաժեշտության հարցում, հենց նրանք, կոմունիստները, և



ո՛չ թե նրանց քննադատները հանդիսացան բրիտանական ժողովրդի իսկական ազգային շահերի համար մարտնչողները: Համերաշխությունը Սովետական Միության հետ ո՛չ միայն չէր խանգարում, այլև նպաստում էր անգլիական բանվորների հայրենասիրական տրամադրության աճմանը պատերազմի ժամանակ: Այդ է վկայում նաև այն փաստը, որ Մեծ Բրիտանիայի և Սովետական Միության միջև մարտական դաշինք հաստատելուց հետո պատմության մեջ առաջին անգամ Անգլիայի բանվոր դասակարգի շարքերում երևացին աշխատանքային խանդավառության օրինակներ:

Եվ ո՛չ միայն Անգլիայում, այլև շատ ուրիշ երկրներում կարելի է պարզորոշ տեսնել, որ բանվորների համերաշխությունը Սովետական Միության հետ միաժամանակ նրանց համար ծառայում է հայրենասիրական վերելքի առանձնահատուկ աղբյուր: Այս բանը շատ որոշակի վկաներ նկատել են Ֆրանսիայում, Հարավսլավիայում, Չեխոսլովակիայում, Լեհաստանում, Բուլղարիայում և մի շարք այլ երկրներում:

Կարելի է նույնիսկ ասել, որ բոլոր երկրների գիտակից բանվորների շարքերում հայրենասիրության զարգացման դարաշր-

ջանք, ինչպես ասած, սկսվեց սովետական հայրենասիրության ծննդյան օրը:

Երբ Ռուսաստանի բանվոր դասակարգը իր համար նվաճեց իր երկրի լիիրավ տիրոջ դրությունը, այն ժամանակ մյուս երկրների գիտակից բանվորները, բնականաբար, սկսեցին առանձնահատուկ համակրանք տածել դեպի մեր սովետական երկիրը և սկսեցին այն անվանել բոլոր երկրների հայրենիքը: Բայց միևնույն ժամանակ նրանց համակրանքը դեպի մեր երկիրը նրանց մեջ առաջ բերեց համակրանքի զգացմունք դեպի նաև իրենց հայրենիքը: Սովետական ժողովրդի ոգեշնչող օրինակի լույսի տակ նրանք սկսեցին հավատալ իրենց ժողովուրդների լուսավոր ապագային: Նրանք սկսեցին առանձնապես սիրել իրենց երկիրը, որպես իրենց ազգի աշխատավորության լավագույն ապագայի օջախը:

Մյուս երկրների գիտակից բանվորների սրտերում սովետական հայրենասիրության ուժը իրեն առանձնապես զգալ տվեց նրանց պարտիզանական քաջարի պայքարում ընդդեմ գերման-ֆաշիստական օկուպանտների, որոնք ուզում էին բանվորներից և գյուղացիներից ընդմիշտ խլել հայրենիքի հույսն ու իրավունքը:



## ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԴԵՄՈԿՐԱՏԻԶՄԸ

Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին բուրժուական շատ երկրներ ապրեցին վերածնունդ և մարտական հայրենասիրության աննախընթաց վերելք, որն, ի հարկե, հիտլերյան Գերմանիայի դեմ տարած հաղթանակի օրը չդադարեց գոյություն ունենալուց, այլ է՛լ ավելի է շարունակվելու:

Ինչպես հայտնի է, հայրենասիրական շարժման պատմական սկիզբը սերտորեն կապված է երիտասարդ բուրժուական դեմոկրատիայի ռևոլյուցիոն շարժումների հետ: Ֆրանսիական հայրենասերները մեկ ու կես դար առաջ հանդես էին գալիս «Ազատություն, հավասարություն և եղբայրություն» լոզունգներով: Միայն 19-րդ դարի երկրորդ կեսում կապիտալիստական երկրների մեծ մասում հայրենասիրությունը ամբողջովին կորցրեց իր դեմոկրատական կենդանի ոգին և տիրապետող դասակարգերի ձեռքին վերածվեց մասսաներին խաբելու համար օգտագործվող փետիշի: Մեր օրերին, ժողովրդական մասսաների վերածնված իսկական հայրենասիրությունը դրսևորում և զարգացնում է անցած

Հայրենասիրական շարժման առաջավոր շարքերում ամենուրեք ընթանում էին և ընթանում են կոմունիստները: Չէ՞ որ կոմունիզմը, ինչպես ոչ մի այլ իդեոլոգիա, իր կողմնակիցներին զինում ու ոգեշնչում է ժողովրդի ինչպես ազգային, այնպես էլ սոցիալական ազատագրության իդեալներով: Մեր օրերի կոմունիզմը՝ դա առաջավոր բանվորների խորին ընդհանրությունն է ժողովրդի լայն մասսաների՝ բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի գաղափարական աշխարհի հետ, նրանց ամենօրյա կյանքի հետ, նրանց հիշողությունների հետ՝ հերոսական անցյալ մասին, և իղձերի հետ՝ լուսավոր ապագայի մասին: Եվ զարմանալի չէ, որ ժողովրդական մասսաներն իրենց կողմից այժմ այնպիսի ուժեղ աջակցություն և վստահություն են ցույց տալիս կոմունիստական պարտիաներին, ինչպես արդեն դրսևորվել է, օրինակ, Ֆրանսիայում, Հարավսլավիայում, Լեհաստանում, Բուլղարիայում և նույնիսկ Իտալիայում, Ֆինլանդիայում և Ռումինիայում:

Հաղթանակած բանվոր դասակարգի մեծ երկրում, Սովետական Միությունում հայրենասիրության զարգացումն արդեն գտնը-



նում է, ի հարկե, շատ ավելի բարձր մակարդակի վրա:

Սովետական հայրենասիրության զարգացման համար հսկայական նշանակություն ունեցավ Լենինի-Ստալինի հանճարեղ ուսմունքը ազգային հարցի մասին և այդ ուսմունքի գործնական հաջող կիրառումը բոլշևիկյան պարտիայի ու սովետական կառավարության կողմից: Սովետական Միության բոլոր ժողովուրդների արագ ձեռք բերված ազգային կուլտուրայի ծաղկումը ամենաուժեղ թափով նպաստեց, որ նրանք փոխադարձ բարեկամության անխախտ կապերով համախմբվեն միասնական, եղբայրական ընտանիքի մեջ:

Սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքների վրա կառուցված Ստալինյան Կոնստիտուցիան դարձավ ո՛չ միայն ՍՍՌՄ պետական կարգի, այլև սովետական հայրենասիրության հետագա զարգացման ամուր հիմքը: Եվ միևնույն ժամանակ աշխարհում այդ միակ մինչև վերջը դեմոկրատական Կոնստիտուցիան հանդիսացավ, ինչպես նախատեսում էր ընկեր Ստալինը այդ կոնստիտուցիայի ընդունման ժամանակ, բարոյական օգնություն և ռեալ նեցուկ բոլոր նրանց համար, որոնք մյուս երկրներում

պայքար էին մղում և պայքար են մղում ֆաշիստական բարբարոսության դեմ:

Մարդու կողմից մարդու շահագործման վերացման և սոցիալիստական շինարարության բոլոր պատմական նվաճումները ՍՍՌՄ-ում՝ ծառայում էին սովետական հայրենասիրության մշտական վերելքին՝ Սովետական Միության աշխատավորների միլիոնավոր մասսաների մեջ: Այդ բոլորի հետևանքով սովետական ժողովուրդը Հայրենական Մեծ պատերազմում ի վիճակի եղավ արիությամբ դիմանալու բոլոր աներևակայելի փորձություններին: Սովետական հայրենասիրությունը հանդիսացավ ամենահաղթ ուժ: Եվ ոչ ոք չի կարող կասկածել, որ խաղաղ շինարարության սկսվող նոր ժամանակաշրջանում սովետական հայրենասիրությունը ի վիճակի կլինի նորանոր հրաշքներ գործելու:

Մյուս երկրներում հայրենասիրական շարժումը, անտարակույս, շարունակելու է պայքարը ֆաշիզմի և ռեակցիայի արմատախիլ անելու համար, հայրենիքը դեմոկրատացնելու և նրա անվտանգությունն ու անկախությունը ապահովելու համար: Բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի իսկական հայրենասիրությունը ամենու-



րեք պատրաստ է հակահարված տալու ամեն տեսակ իմպերիալիստական ոտնձգություններին և նպաստելու, որ ժողովուրդների միջև հարաբերությունները հաստատվեն արդարացիության ու խաղաղ համագործակցության հիման վրա: Իսկական հայրենասերները պաշտպանելու են նաև բոլոր ճնշված ազգերի իրավունքը՝ ձեռք բերել ազգային լիակատար անկախություն և պայքարել աշխատավորական մասսաների մարդավայել գոյության համար:

(«ՆՈՎՈՅԵ ՎՐԵՄՅԱ» № 1)

---

դարերի հայրենասիրական մեծ շարժումնե-
րի լավագույն տրադիցիաները: Նա օտա-
րերկրյա ճնշողների դեմ ազատագրական
պայքար մղելու անձնազոհ պատրաստակա-
մությունը միացնում է իր քաղաքական
ձգտումների խորապես դեմոկրատական և
առաջադիմական նպատակասլացության
հետ: Այն տոգորված է ազատասիրությամբ
և բողոքի ոգով ընդդեմ ժողովրդական
մասսաների իրավազրկության, ընդդեմ հա-
սարակության պորտաբույծ տարրերի կող-
մից աշխատավորներին դասակարգայնորեն
ճնշելու և անողոք կերպով շահագործելու:

Մեր օրերին, երբ ամենուրեք հայրենիքի
ազատության գլխավոր թշնամին դարձել է
ֆաշիզմը, չի կարող լինել իսկական հայ-
րենասիրություն, որը չկրի սուր արտա-
հայտված հակաֆաշիստական, հակառեակ-
ցիոն բնույթ: Ֆաշիստների պաշտպանները,
որոնք հանդես են գալիս հայրենասիրու-
թյան դիմակի տակ, գործնականում հան-
դիսանում են առանձնապես վտանգավոր
տեսակի կեղծ հայրենասերներ, որովհետև
նրանք վիժեցնում են խաղաղասեր ժողո-
վուրդների համար կարևորագույն խնդիր-
ների իրագործումը՝ ֆաշիզմի և նացիզմի
վերջին հետքերի ոչնչացումը:



Մեր օրերին վերածնված հայրենասիրու-
թյունը դա անմիտ արարողություն չէ, այլ
անձնվեր պայքար իր ժողովրդի ազատ, եր-
ջանիկ ապագայի համար: Գերմանացիների
կողմից ժամանակավորապես օկուպացված
մի ամբողջ շարք երկրներում մենք քաղա-
քացիական առնականության և մարտական
ազնվության օրինակներ տեսանք ո՛չ միայն
բանվորների կողմից, այլև բնակչության
այնպիսի խավերի կողմից, որոնք մի շարք
երկրներում վաղուց արդեն ընդունակու-
թյուն կամ տրամադրություն չէին ցույց
տալիս լրջորեն պայքարելու հասարակական
առաջադիմությանը համապատասխանող
գաղափարական նպատակների համար: Օ-
րինակ, դեմոկրատական ինտելիգենցիայի
և գյուղացիական երիտասարդության միջից
դուրս եկած շատ պարտիզաններ մարտըն-
չում էին բանվորների հետ ձեռք ձեռքի
տված, գործով իրենց ցույց էին տալիս
նոր, ազնիվ կերպարանքով իսկական հայ-
րենասերներ, որոնք ընդունակ են ոգեշնչ-
վելու բարձր իդեալներով և պատրաստ են,
եթե պահանջվի, իրենց կյանքը զոհաբերե-
լու այդ իդեալների համար մղվող պայքա-
րում:

Միանգամայն բնական է, որ այդպիսի

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

ՎՖ 01523 պատվեր № 882, տիրաժ 5000

Հայկական ՍՍՌ ԺԿՍ-ին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան